## ԳԱՂՈՒԹԷ ԳԱՂՈՒԹ

### Հ. Յ. Դ. ՕՐԸ ՊՈՒՔՐԷՇԻ ՄԷՋ

— ∽ —

ՊՈՒՔՐԷՇ, (Յատուկ) — Կիրակի 13 հոկտ. Պուքրէշի ամենախոշոր սրահներէն մէկուն մէջ տօնուեցաւ Հ. Յ. Դ. 45ամեակը եւ Ք. Միքայէլեանի մահուան 30ամեակը: Աննախընթաց բազմութիւն մը ներկայ էր հանդէսին: Գաւառէն բազմաթիւ ընկերներ փութացած էին Պուքրէշ: Օրուան աթիւ խօսք առին ընկերներ Եփրեմ Սարգիսեան, Սարգիս Արարատեան եւ Սարգիս Սարուխի: Բոլորն ալ բացատրեցին օրուան նշանակութիւնն ու Դաշնակցութեան ապագայ ծրագիրը, ու հասարակութիւնը ջերմապէս ծափահարեց մեր բանախօսները: Գեղարուեստական բաժնին իրենց մասնակցութիւնը բերած էին Օր. Օր. Հիւսեան, Քէչիչեան, Թաթաւլաճեան եւ փոքրիկն Ժ. Միքէլեան՝ արտասանութիւններով: Ընկ. Վ. Հիւսեան կարդաց Ա. Ահարոնեանի Քրիստափորի յիշատակին նուիրած …

…

Ներկայիս երբ երեք միլիոն Թուրքեր կը բնակին Ռումանիոյ, Եուկոսլաւիոյ եւ Պուլկարիոյ մէջ: Ասոնք բոլորը երկիր բերել կը նշանակէ երկիրը օժտել երեք միլիոնի նոր բնակչութեամբ մը, ինչ որ արհամարհելի չէ, անշուշտ:

Մեր հնգամեայ ծրագիրը Թուրքիա պիտի փոխադրէ հինգ միլիոնին միայն վեց հարիւր հազարը: Եթէ մնացեալ տարիներու ընթացքին եւս նոյն թափով աշխատինք, 25 տարիէն կրնանք 3 միլիոն Թուրքերը փոխադրել:

Ըստ իս սակայն երկար ժամանակաշրջան մըն է: Այն հինգ տարին մեզ պիտի տան նպաստաւոր արդիւնքներ, որոնք պիտի մղեն աւելի ուժգին թափով փարիլ գործին ու այդ երեք միլի…

…

## ՄԱՄՈՒԼ

### Աջէն ու ձախէն

— ● —

*Պուքրէշի «Արագ»ը կը բացատրէ այս խորագրով խմբագրականի մը մէջ (3 հոկտ.).*

— «Հ. Մ. Ը. Մ.ը ծանր նզնաժամ մը կ'անցընէ այս պահուս: Կազմակերպութիւն մը որ մարմին առաւ հայ ժողովուրդի անմերապահ խանդավառութեանը մէջ, եւ 17 տարիէ ի վեր կ'ընձիւղի եւ կ'ուռճանայ հայ ժողովուրդին գուրգուրանքին շնորհիւ՝ այսօր խսկապէս տագնապի մէջ է: Վտանգի տակ է եթէ ոչ անոր գոյութիւնը՝ գոնէ համակրանքի համատարած ալիքը որով ցարդ շրջապատուած էր ան: Ու այդ վտանգը երթալով կը շեշտուի: Ներսէն ու դուրսէն:

Արտաքին վտանգը շօշափելի նախ: Կազմակերպութիւն մը որ կոչուած էր դառնալու համազգային հետաքրքրութեան եւ հոգածութեան առարկայ, եւ որուն շուրջը պէտք է չքանային ամէն կուսակցական եւ հատուածական շահ ու նկատում, դժբախտաբար այս պահուս տակաւ անտարբերութիւն եւ չկամութիւն կը ստեղծէ իր շուրջը: Աւելին: Արդէն կը շատնան զայն քայքայելու նկրտողները:

Ճիշդ է որ նոր չէ անոր սպառնացող այդ արտաքին վտանգը: Իր գոյութեան 17 տարիներու ընթացքին ան յաճախ ենթակայ եղաւ ոտնձգութեանց, ու թատր՝ խլրդային աշխատանքներու: Բայց ան կրցաւ տոկալ աջէն ու ձախէն եկող հարուածներու, ու ներսէն առողջ, դէմ դրաւ անոնց: Կրցաւ իր գոյութիւնը փրկել, եւ ընդհակառակն տարածել իր փրկարար ցանցը աշխարհի բոլոր հայ գաղութներուն մէջ:

Այս անգամուան վտանգը լուրջ է սակայն: Այլեւս իր գործունէութիւնը խաչաձեւող ձեռնարկները չէ միայն որ կը ստեղծուին անոր շուրջը՝ տգեղ մրցակցութիւն մը ստեղծելով, եւ բաժնելով անոր վայելած համակրութիւնը: Այլ ուղղակի ճիգ մը կայ խեղդիչ օղակի մը մէջ առնելու համար զայն:

Մեր մասնակցութիւնը այն ձեռնարկներուն համար չէ որոնք զանազան գաղութներու մէջ մարմին կ'առնեն երիտասարդական տարբեր կազմակերպութեանց կողմէ՝ հետապնդելով Հ. Մ. Ը. Մ.ի որդեգրածներուն նման կամ մօտիկ նպատակներ: Արդարեւ կան Հ. Մ. Ը. Մ.էն դուրս զուտ մարզական եւ սկաուտական ուրիշ միութիւններ, որոնք յաճախ կը խաչաձեւեն Հ. Մ. Ը. Մ.ի գործունէութիւնը, կազմուած պարզապէս անհատական փառասիրութեանց կամ պառակտումներու երեսէն եւ զոր, առ'ղ, հնարաւոր չեղաւ համախմբել միակ դրօշի մը տակ, հակառակ թափուած բոլոր ճիգերուն: Կան միութիւններ ալ՝ որոնք զուտ մարզական կազմակերպութիւններ չըլլալով հանդերձ՝ իրենց ծրագրին մէջ որդեգրած են մարզանքը իբր մաս իրենց անդամներուն տրուելիք դաստիարակութեան, եւ որոնք, դժբախտաբար, իրենք զիրենք կը մղեն երբեմն անբաղձալի խաչաձեւումներու՝ եթէ ոչ մրցակցութեան:

Մեր մտահոգութիւնը կը բխի հիմնական վտանգէ մը: Այն որ աւելի դաւադրօրէն կը մօտենայ՝ Հ. Մ. Ը. Մ.ը սարսելու համար իր հիմէն: Ան կու գայ աջէն ու ձախէն միեւնոյնատեն:

Նախ տեսնենք ձախէն եկածը: Անոնք որ աչքէ անցուցին Հօկի Եւրոպայի համագումարին որոշումները՝ սարսափելով տեսան որ Հօկը ճիգ մը կ'ընէ վերջնականապէս թօթափելու Հայաստանի օգնելու իր հիմնական մտահոգութիւնը, առաւելապէս նուիրուելով ուրիշ զանազան ձեռնարկներու՝ որոնց բուն նպատակն է գաղութները պառակտել: Այդ ձեռնարկներուն մէջ՝ որոնք յիշատակուած են յականէ անուանէ՝ կան գաղութներու մէջ Հօկեան դպրոցներ ստեղծելու, «Նորք» փիրմային տակ Հօկեան մարզական ակումբներ կազմակերպելու կէտերն ալ, կէտեր՝ որոնք երկար բարակ բացատրութեանց պէտք չունին քօղազերծ ընելու համար Հօկի հետապնդած բուն նպատակը: Ուշիմ ընթերցողը կ'ըմբռնէ իսկոյն:

Դաւադրութիւն մըն ալ աջէն կու գայ, կազմակերպութենէ մը որ իբր թէ կոչուած է հայ ժողովուրդը միացնել յանուն բարեգործութեան: Կ'ակնարկենք Բարեգործականին որ եւս գաղութներու մէջ սկսեր է նախաձեռնել կազմակերպումը մարզական միութեանց, անոնց համար բանալով իր դրամարկղն ալ՝ զոր վարժուած է այնքան ամուր կղպելու ազգային շատ աւելի կենսական կարիքներու առջեւ: Շատ խորաթափանց ըլլալու պէտք չկայ կռահելու համար անոր ալ թաքուն նպատակը,— լղրճել նոր սերունդին հոգին, լաքէներու նոր բանակ մը աւելցնելու իր արդէն ունեցածներուն վրայ»:



### ՆԻՒԹԵՐ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

## ՋԷՄԱԼ ՓԱՇԱՅԻ ՅԻՇԱՏԱԿՆԵՐԸ

### ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑ

Վերածեց՝ Պ. ՖՐՈՒՆՃԵԱՆ

Ամէն անգամ որ կառավարութիւնը ներքին կամ արտաքին կարեւոր խնդիրներ ունենար սեղանի վրայ, Ռուսիոյ կողմէ նորէն մէջտեղ կը նետուէր հայկ. հարցը: Աղտիւլ Համիտ Բ. հարցը կը լուծէր քանի մը խոստումներ տալով: 1895—96ի ատեններ …

Թուրքերը ոչ մէկ ատելութիւն կը սնուցանէին Հայերուն դէմ: Շատ Թուրքեր իրարու հետ մրցումի ելած էին Հայեր առնելու համար իրենց պաշտպանութեան տակ եւ Պոլսոյ մէջ բաւական թիւով Թուրք ընտանիքներ իրենց բարեկամական զգացումները …

…

(Շար.)

